# ՕԳՆՈՒԹԵԱՆ ՍՆՏՈՒԿ

## Կարօտեալ Հայ Ուսուցչաց

### Կ. ՊՈԼՍՈՅ



# ԿԱՆՈՆԱԳԻՐ





Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ

*Թիւ 27, Ֆինճանճըլար Եօգուշու*

1901

**ՕԳՆՈՒԹԵԱՆ ՄՆՏՈՒԿ**

Կարօտեալ Հայ Ուսուցչաց

**Կ. ՊՈԼՍՈՅ**

# ԿԱՆՈՆԱԳԻՐ



Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ՄԱՑԹԷՈՍԵԱՆ
*Թիւ 27, Ֆինճանճըլար Եօգուշու*
1901

# ՕԳՆՈՒԹԵԱՆ ՍՆՏՈՒԿ

## ԿԱՐՕՏԵԱԼ ՀԱՅ ՈՒՍՈՒՑՉԱՑ Կ. ՊՈԼՍՈՅ

# ԿԱՆՈՆԱԳԻՐ

## ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ

Յօդուած 1. — *Ուսումնական Խորհրդոյ առաջարկութեամբ, և Կեդրոնական Վարչութեան Քաղաքական Ժողովոյ որոշմամբ, Օգնութեան Սնտուկ մը հաստատուած է կարօտեալ հայ ուսուցչաց և ուսուցչուհեաց համար ։*

---

## ՀԱՍՈՅԹԻ ԱՂԲԻՒՐՆԵՐ

Յօդ. 2. — *Այս Օգնութեան Սնտուկին առաջին դրամագլուխը կազմելու համար, Ուսումնական Խորհուրդը դիմում պիտի ընէ Կ. Պոլիս գտնուող բոլոր հայ ուսուցչաց և ուսուցչուհեաց, և անոնցմէ պիտի խնդրէ դրամական նուէր մը միանուագ վճարելի ։*

Յօդ. 3. — *Օգնութեան Սնտուկի հասոյթի տեւական աղբիւրներն են գլխաւորաբար .*

Ա. Օգնութեան Սնտուկի Հոգաբարձութեան նախաձեռնութեամբ պարբերաբար կազմակերպուելիք նուագահանդէսի մը կամ թատերական ներկայացման մը և կամ նմանօրինակ ձեռնարկներու արդիւնքը .

Բ. Իւրաքանչիւր ուսուցչական վկայագրէ յաւելուածական մէկ արծաթ մէճիտ .

Գ. Իւրաքանչիւր շրջանաւարտի վկայականէ մէկ արծաթ մէճիտ .

Դ. Իւրաքանչիւր դասագրքի վաւերացման առթիւ՝ հեղինակներու կամ հրատարակիչներու կողմէ վճարելի երկու ու կէս արծաթ մէճիտ , առաջին տպագրութեան համար , և հինգ արծաթ մէճիտ իւրաքանչիւր նոր տպագրութեան համար .

Ե. Պատրիարքարանի Սնտուկէն վճարելի տարեկան նպաստի գումար մը , որչափ որ կը ներէ Պատրիարքարանի ելեւմտական վիճակը ։

Յօդ. 4. — Օգնութեան Սնտուկին հասոյթի պատահական աղբիւրներն են գլխաւորաբար .

Ա. Կտակեալ կամ նուիրեալ գումարներ .

Բ. Կտակեալ կամ նուիրեալ կալուածներու կամ արժեթղթերու հասոյթներ .

Գ. Ի հարկին Կ. Պոլսոյ հայ ուսուցչաց դիմում ըլլալով՝ կատարուելիք բացառիկ նուիրատուութեանց արդիւնքը .

Դ. Ուսուցչաց կեանքի ապահովագրութեան առթիւ՝ ապահովագրող ընկերութեան կողմէ ի նպաստ Օգնութեան Սնտուկին վճարելի գումարներ ։

---

## ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Յօդ. 5. — Ազգային Կեդր. Վարչութեան Քաղաքական Ժողովը կարօտեալ հայ ուսուցչաց Օգնութեան Սնտուկին մատակարարութիւնը կը յանձնէ յատուկ Հոգաբարձութեան մը ։

Յօդ. 6. — *Այս Հոգաբարձութիւնը, ընդ հովանաւորութեամբ Ամեն. Սրբազան Պատրիարք Հօր, կը բաղկանայ հինգ անդամէ, որք կ'ընտրուին Ազգային Վարչութեան Քաղաքական Ժողովոյ կողմէ, Ուսումնական և Տնտեսական Խորհուրդներէ համաձայնութեամբ առաջարկուած անուններու վրայ։*

Յօդ. 7. — *Հոգաբարձութիւնը ունի Ատենապետ մը, Դեր-Ատենապետ մը, Ատենադպիր մը, Գանձապետ մը և Համարակալ մը։*

Յօդ. 8. — *Հոգաբարձութեան պաշտօնը հինգ տարի կը տեւէ, և անդամները վերընտրելի են։ Եթէ այդ հինգ տարուան միջոցին անդամներէն մին վախճանի կամ հրաժարի, անոր յաջորդը կ'ընտրուի Քաղաքական Ժողովէն՝ Հոգաբարձութեան կողմէ առաջարկուած անուններու վրայ, և պաշտօնը կը տեւէ մինչեւ հնգամեայ շրջանին վերջը։*

Յօդ. 9. — *Հոգաբարձութիւնը կը գանձէ հասոյթները և կը վճարէ նպաստները։*

Յօդ. 10. — *Հոգաբարձութիւնը ամէն տարեգլխի իր մատակարարութեան հաշիւը և Սնտուկին վիճակը կը ներկայացնէ Ազգային Վարչութեան Քաղաքական Ժողովոյ ի վաւերացումն ըստ օրինի։*

---

## ՆՊԱՍՏԻ ՊԱՅՄԱՆՆԵՐ

Յօդ. 11. — *Երբ Օգնութեան Սնտուկին հաշուոյն հաւաքուած գումարը երեք հարիւր* (300) *ոսկւոյ հասնի, այն ատեն Հոգաբարձութիւնը կը սկսի նպաստ վճարել։ Այդ երեք հարիւր ոսկին պիտի կազմէ Սնտուկին անձեռնմխելի դրամագլուխը, որուն վրայ հետզհետէ պիտի աւելնայ նոր հասոյթներու քսան առ հարիւր*($^{20}/_{100}$)*ը։*

Յօդ. 12. — *Անձեռնմխելի դրամագլխին բոլոր հասոյթը*

և նոր հասոյթներու ութսուն առ հարիւր ($^{80}/_{100}$)ը պիտի կրնայ յատկանալ նպաստներուն :

Յօդ. 13. — Հոգաբարձութիւնը անձեռնմխելի դրամագլուխը պիտի շահագործէ ապահովագոյն միջոցներով :

Յօդ. 14. — Նպաստները ժամանակաւոր են, և ժամանակաւոր նպաստ կը տրուի Կ. Պոլիս գտնուող ա՛յն կարօտ հայ ուսուցիչներուն և ուսուցչուհիներուն, որոնք տասը տարի պաշտօն վարած են հայ վարժարաններու մէջ :

Յօդ. 15. — Նոյնպէս ժամանակաւոր նպաստ կը տրուի տասը տարիէ պակաս պաշտօն վարած ա՛յն ուսուցչաց և ուսուցչուհեաց՝ որոնք ո՛չ-տեւական հիւանդութեամբ կը տառապին :

Յօդ. 16. — Օգնութեան Սնտուկը կրնայ ստիպողական պարագաներու մէջ անտոկոս դրամ փոխ տալ հայ ուսուցչաց և ուսուցչուհեաց, անոնց ամսականներէն թաղային սնտուկներուն քով ունեցած պահանջքները իբրև երաշխաւորութիւն ընդունելով, և օրինաւոր պարտամուրհակ առնելով անոնցմէ :

Յօդ. 17. — Նպաստի խնդրագրերը պէտք է ներկայացուին Օգնութեան Սնտուկի Հոգաբարձութեան : Այդ խնդրագրերուն կցուած ըլլալու են նպաստ խնդրող ուսուցչաց և ուսուցչուհեաց ուսուցչական վկայագրերն և բարւոք պաշտօնավարութեան գրաւոր և պաշտօնական վկայութիւնները :

Յօդ. 18. — Հոգաբարձութիւնն այդ պաշտօնագրերը և ներկայացող ուսուցչին կարօտութիւնը քննելէ, և ի հարկին Ուսումնական Խորհրդոյ կարծիքը առնելէ յետոյ, կ՚ընդունի կամ կը մերժէ անոնց խնդրագրերը :

Յօդ. 19. — Այն ուսուցիչներն և ուսուցչուհիները՝ որոնք Ուսումնական Խորհրդոյ որոշմամբ պաշտօնավարելու իրաւունքէն իսպառ զրկուած են, չպիտի կրնան ո՛ և է նպաստ ստանալ Օգնութեան Սնտուկէն :

Յօդ. 20. — *Եթէ Օգնութեան Սնտուկին նիւթական միջոցները ներեն, Հոգաբարձութիւնը Ուսումնական Խորհրդոյ հաւանութեամբ և Ազգային Վարչութեան Քաղաքական Ժողովոյ հաստատութեամբ կրնայ ընդարձակել իր գործառնութեանց շրջանակը։*

---

## ԳԱՒԱՌԱԿԱՆ ՕԳՆՈՒԹԵԱՆ ՍՆՏՈՒԿՆԵՐ

Յօդ. 21. — *Գաւառական Ազգային Վարչութիւններն ալ այս Կանոնագրութեան տրամադրութեանց համաձայն պիտի կրնան Օգնութեան Սնտուկներ հաստատել յօգուտ իրենց գաւառական հայ ուսուցչաց և ուսուցչուհեաց։*

Քննեալ եւ վաւերացեալ ի Քաղաքական Ժողովոյ Ազգային Կեդրոնական Վարչութեան, յ13 Յունիսի 1901, եւ հրամայեալ ի մենջ ի գործադրութիւն։

*Ի Պատրիարքարանիս, ի 14 Յունիսի 1901.*

ՊԱՏՐԻԱՐՔ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՅ

ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ



